Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 9 ԱՊՐԻԼ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78





# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է

*Մայիսի մեկը բոլոր երկրների բանվորների եղբայրության, նրանց մարտական ուժերի ստուգատեսի օրն է, ամբողջ աշխարհի աշխատավորների համերաշխության և բարեկամության օրը։*

*1886 թվականի մայիսի 1-ին ԱՄՆ-ում բռնկվեց գործադուլների և ցույցերի հուժկու ալիք, իսկ Չիկագոյում այն համընդհանուր գործադուլի բնույթ ստացավ։ Բանվորները պահանջում էին բարելավել աշխատանքի պայմանները, մտցնել 8-ժամյա բանվորական օր։ Չիկագոյում տեղի ունեցած մասսայական ցույցը ենթարկվեց ոստիկանության հարձակմանը։ Մայիսի 4-ին տեղի ունեցավ բողոքի մասսայական միտինգ, որի կազմակերպիչներից մի մասը գլխատվեց, մյուսները բանտարկվեցին։*

*Մայիսյան դեպքերը ԱՄՆ-ում ամբողջ աշ-*

խարհի աշխատավորներին ցույց տվեցին կապիտալի դեմ պայքարի համար բոլոր երկրների պրոլետարների մարտական համախմբման անհրաժեշտությունը։

Այդ հիման վրա էլ 1889 թվականի հուլիսին II Ինտերնացիոնալի Փարիզի կոնգրեսը որոշեց ամեն տարի մայիսի 1-ը բոլոր երկրներում նշել որպես միջազգային տոն։

Փարիզի կոնգրեսի որոշումը պրոլետարիատի միջազգային համերաշխության աճի վկայությունն էր։ Աշխարհի բոլոր մասերում միլիոնավոր բանվորներ ջերմորեն արձագանքեցին կոնգրեսի որոշմանը և 1890 թվականին առաջին անգամ նշեցին մայիսմեկյան տոնը։

Եվ ահա այդ ժամանակվանից սկսած ամեն տարի մայիսի 1-ին ամբողջ աշխարհի աշխատավորները ալ դրոշներով, ռևոլյուցիոն երգերով դուրս են գալիս ցույցի, լցվում են փողոցներն ու հրապարակները, ցուցադրում իրենց համերաշխությունն ու եղբայրությունը, ամեն տեսակ սոցիալական ու ազգային ճնշման դեմ պայքարելու պատրաստակամությունը, համախմբում են իրենց շարքերը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։



Դեռևս 1905 թվականին Վ. Ի. Լենինը գրել է, որ մայիսի մեկը համայն աշխարհի բանվորները «տոնում են իրենց արթնացումը դեպի լույսն ու գիտությունը, իրենց միավորումը մի եղբայրական միության մեջ, պայքարելու համար ընդդեմ ամեն մի կեղեքման, ընդդեմ ամեն մի կամայականության, ընդդեմ ամեն մի շահագործման, հանուն հասարակության սոցիալիստական կառուցման»։

Մայիսմեկյան տոնը Ռուսաստանում առաջին անգամ նշվել է 1891 թվականին՝ Պետերբուրգում, իսկ 1897 թվականից սկսած մայիսմեկյան գործադուլները Ռուսաստանում տարածվում են ամենուրեք և մեծ մասամբ քաղաքական բնույթ կրում։

Վ. Ի. Լենինը մեծագույն իրադարձություն է համարել 1900 թվականին Խարկովում տեղի ունեցած տասնհազարանոց մայիսմեկյան քաղաքական ցույցը։

Մայիսմեկյան ցույցերն ավելի կազմակերպված բնույթ են ստանում սկսած 1902 թվականից։ Լենինը պահանջում էր անպայման ցույցեր կազմակերպել և մայիսմեկյան պահանջների մեջ մտցնել ինքնակալության տապալման լոզունգը։ 1905 թվականին մայիսի 1-ը Ռուսաստանի 177 քաղաքներում և

արդյունաբերական կետերում անցկացվեց զինված ապստամբության նախապատրաստման լոզունգով: 1912 թվականի մայիսյան օրերին գործադուլ արեց 400 հազար մարդ, որոնց պահանջներն էին՝ 8-ժամյա բանվորական օր, կալվածատիրական հողերի բռնագրավում, ցարական ինքնակալության տապալում:

Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայից հետո մայիսի 1-ը դարձավ համաշխարհային պրոլետարիատի հետ համերաշխության օր, հաղթանակած ազատ աշխատանքի տոն: Մայիսի մեկը խանդավառությամբ տոնում է սովետական բազմազգ ժողովուրդը, փառաբանում մեր մեծ Հայրենիքը, Կոմունիստական պարտիային, որը մեզ տանում է հաղթանակից հաղթանակ:

Մայիսմեկյան վերջին տոնակատարությունից հետո անցած մեկ տարվա ընթացքում նշանակալից իրադարձություններ են տեղի ունեցել կոմունիզմի ուղիով մեր Հայրենիքի առաջընթացի տարեգրության մեջ: Սովետական ժողովուրդը հաղթականորեն առաջ է մղել մեր երկրի էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացումը, ամրապնդվել է Սովետական Միության միջազգային հեղինակությունը:



Այս տարի աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի 1-ը սովետական ժողովուրդը նշում է էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի զարգացման գործում ձեռք բերած վիթխարի հաջողությունների, ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կենսագործման համար ծավալված համաժողովրդական մրցության, աշխատավորների քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր, հուժկու վերելքի պայմաններում:

Սովետական մարդկանց ուրախացնում, նրանց սրտերը հպարտությամբ են լցնում մեր հերոսական բանվոր դասակարգի, արդյունաբերության աշխատողների հաջողությունները: Արդյունաբերության համախառն արտադրանքը 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 36 անգամ, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը աճել է 83 անգամ, իսկ մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքը՝ 240 անգամ:

Այժմ մեր երկրում մեկ ամսում ավելի շատ պողպատ է ձուլվում և ավելի շատ նավթ արդյունահանվում, քան ամբողջ 1913 թվականին, իսկ յուրաքանչյուր 3-օրում ար-

տադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան նախառևոլյուցիոն Ռուսաստանում արտադրվել է մեկ տարում։ Այժմ մեր երկիրն այնքան պողպատ է արտադրում որքան Անգլիան, Արևմտյան Գերմանիան և Իտալիան միասին վերցրած, ավելի շատ երկաթահանք, քան Անգլիան, Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան միասին վերցրած, չուգուն՝ ավելի, քան Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան միասին վերցրած։

Միայն անցյալ տարի շարք մտած 7 կոմերիտական դոմնաները ավելի շատ մետաղ են տալիս, քան տվել է Ռուսաստանի սև մետալուրգիան 1913 թվականին։ Մագնիտագորսկի, Կուզնեցկի, Նիժնի-Տագիլի կոմբինատները և «Զապորոժստալ» գործարանը ավելի շատ չուգուն և պողպատ են արտադրում, քան Ֆրանսիայի ամբողջ արդյունաբերությունը։ Միայն Մագնիտագորսկի կոմբինատը 1957 թվականին ավելի շատ սև մետաղ է արտադրել, քան ցարական Ռուսաստանը ամբողջ 1913 թվականին։

Մեր երկիրը հիանալի հաջողությունների է հասել նաև սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։

Անցյալ տարվա դեկտեմբերին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը հանրագումարի բերելով գյուղատնտեսության զարգացման վերջին 5 տարվա հիանալի արդյունքները, գոհունակությամբ նշեց գյուղատնտեսության վերելքի ծրագրի իրականացման հիրավի ռևոլյուցիոն նշանակությունը։



Սովետական իշխանության առաջին տարիներին Լենինի երազած 100 հազար տրակտորի դիմաց 1958 թվականին մեր գյուղատնտեսությունն ուներ 1 միլիոն 700 հազարից ավելի տրակտոր, 500 հազար հացահատիկային կոմբայն, մոտ 700 հազար բեռնատար ավտոմեքենա և այլն։

Խոպանի յուրացման շնորհիվ մեր երկիրը վերջին 5 տարում լրացուցիչ մթերեց տասնյակ միլիոնավոր փութ հացահատիկ և ոչ միայն ծածկեց խոպան հողերի յուրացման բոլոր ծախսերը, այլև ստացավ ավելի քան 18 միլիարդ ռուբլու զուտ եկամուտ։ Անցյալ տարի մեր երկրում ստացվել է հացահատիկի մինչև այդ չտեսնված բերք՝ 8,5 միլիարդ փութ հացահատիկ։

1958 թվականին հավաքվել է ավելի քան 54 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ, կամ երկու անգամից էլ շատ, քան 1953 թվականին, պետությանն է հանձնվել 4 միլիոն 400 հազար տոննա բամբակ, որ առաջներում երբեք այդքան չի ստացվել։ Այժմ ՍՍՌՄ-ը

ԱՄՆ-ին գերազանցում է ցորենի արտադրության ծավալով ավելի քան 2 անգամ, շաքարի ճակնդեղի արտադրությամբ՝ մոտ 3 անգամ, բրդի արտադրությամբ՝ 2,5 անգամ։

1958 թվականին անասնաբուծական մթերքների մթերումները 1953 թվականի համեմատությամբ աճեցին. կաթինը՝ ավելի քան 2 անգամ, մսինը՝ 56 տոկոսով, բրդինը՝ 60 տոկոսով։ Յուղի և կաթի արտադրության ընդհանուր ծավալով ՍՍՌՄ-ը դուրս է եկել առաջին տեղը, իսկ բրդի արտադրությամբ՝ երկրորդ տեղն աշխարհում (Ավստրալիայից հետո)։

Վերջին տարիներին աշխատավորների բարեկեցության բարելավմանն ուղղված մի շարք կարևորագույն միջոցառումների իրագործման շնորհիվ կյանքը մեր երկրում դարձել է ավելի լավ, բարելավվել է բոլոր աշխատավորների նյութական ապահովվածությունը, շատացել են խանութներում և շուկաներում վաճառվող ապրանքները, սովետական մարդիկ սկսել են ավելի լավ սնվել, լավ հագնվել, ավելի կուլտուրական ապրել։

Մեր երկրում ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հետ անընդհատ բարձրանում է նաև աշխատավորների կուլտուրական մակարդակը։ 1957 թվականին



ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված էր 50 միլիոն մարդ, այլ կերպ ասած յուրաքանչյուր 4 մարդուց մեկը սովորում էր։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ ներկայումս աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող ավելի քան 7,5 միլիոն մասնագետ, կամ 39 անգամ ավելի, քան 1913 թվականին։ Մեզ մոտ 4 անգամ ավելի ուսանողներ են սովորում, քան Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՌ-ում և Իտալիայում միասին վերցրած։ Մեր բուհերը տալիս են 3 անգամից ավելի շատ ինժեներներ, քան ԱՄՆ-ի բուհերը։ Մեր երկրում անսահման հնարավորություններ են ստեղծված գիտության ու տեխնիկայի զարգացման, նոր հայտնագործությունների և գյուտերի համար։

Սովետական մարդկանց անչափ ուրախացնում և նրանց սրտերը հպարտությամբ է լցնում մեր ինտելիգենցիայի՝ գիտնականների, ինժեներների, տեխնիկների խոշորագույն ներդրումը համաշխարհային գիտության, տեխնիկայի և կուլտուրայի գանձարանը։

Մարդկության պատմության մեջ երկրի առաջին արհեստական արբանյակների ստեղծումը, արեգակնային համակարգու-

թյան առաջին արհեստական մոլորակի արձակումը ազդարարեցին տիեզերական տարածության նվաճման դարագլուխը, հանդիսացան աշխարհում ամենաառաջավոր՝ սովետական գիտության ու տեխնիկայի տրիումֆը։

Այս բոլոր հաջողությունները ակնառու կերպով ցույց են տալիս, թե ինչպիսի հրաշքներ կարող է գործել կապիտալի շղթաներից ազատագրված և իր բախտը սեփական ձեռքը վերցրած ժողովուրդը։ Մեր հաջողությունները առաջ են բերում համաշխարհային հասարակայնության, հարյուր միլիոնավոր հասարակ մարդկանց հիացմունքը և ուրախությունը։



Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի նվաճած բարձունքները, տնտեսական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում վիթխարի վերափոխությունների իրագործումը մեր երկրին հնարավորություն տվեցին թևակոխելու իր զարգացման նոր, կարևորագույն ժամանակաշրջանը, կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

Այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիր-



ներն են՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, ՍՍՌՄ տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը և միաժամանակ ժողովրդի նյութական-հոգևոր աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու պատմական խնդրի լուծումը։ Այդ խնդիրների լուծման ճանապարհին վճռական էտապ է հանդիսանում ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Յոթնամյակում այնքան արդյունաբերական արտադրանք է արտադրվելու, որքան Սովետական իշխանության անցած բոլոր 41 տարիներին։ Արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է մոտավորապես 80 տոկոսով։ Յոթնամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալի մեծացումը հավասար կլինի վերջին 20 տարում արտադրանքի աճին։

Յոթնամյակի տարիներին պողպատի ձուլումը կավելանա 31—36 միլիոն տոննայով։ Հիշենք, որ Արևմտյան Գերմանիան 1957 թվականին արտադրել է 28 միլիոն տոննա,

Անգլիան՝ 22 միլիոն տոննա պողպատ։ Մեր երկիրը 6 տարի առաջ արտադրում էր 34,5 միլիոն տոննա պողպատ։ 7 տարվա աճը ավելին կլինի, քան արտադրել է մեր երկիրը 1952 թվականին։ Երկու հարյուր տարվա ընթացքում երկաթահանքի հանույթը մեր երկրում կազմել է 89 միլիոն տոննա, իսկ յոթնամյակում այն պետք է հասնի 150—160 միլիոն տոննայի։

Նավթի հանույթը մինչև այժմ եղել է 113 միլիոն տոննա, իսկ յոթնամյակում այն կավելանա 127 միլիոն տոննայով ևս։ Այդպիսի աճ չի իմացել պատմության ընթացքում և ոչ մի երկիր։ Նավթի և գազի տեսակարար կշռի աճը վառելիքի բալանսի մեջ յոթնամյակի ընթացքում կտա 125 միլիարդ ռուբլու խնայողություն, մի գումար, որը գերազանցում է քիմիական արդյունաբերության զարգացման համար նախատեսված ծախսերը։ Այդ գումարով կարելի է ապահովել բոլոր էլեկտրակայանների և էլեկտրասիստեմների կառուցումը։

Քիմիական արդյունաբերության արտադրանքը կաճի մոտ 3 անգամ, պլաստմասսաներինը և ձյութերինը՝ ավելի քան 7 անգամ, արհեստական թելինը՝ 12—13 անգամ։ Յոթնամյակում չուգունի ձուլման տարեկան



միջին աճը կազմելու է 3,6—4,4 միլիոն տոննա, ընդ որում պետք է նկատի ունենալ, որ ցարական Ռուսաստանում 1913 թվականին արտադրվել է 4,2 միլիոն տոննա չուգուն։ Այժմ չուգունի արտադրությամբ ՍՍՌՄ-ը գերազանցում է Անգլիային, Ֆրանսիային, Բելգիային միասին վերցրած, իսկ 1965 թվականին կհասնի ԱՄՆ-ի մակարդակին։

Պողպատի ձուլման տարեկան միջին աճը կկազմի 4,4—5,1 միլիոն տոննա, որն ավելին է, քան տվել է հին Ռուսաստանի պողպատի ամբողջ արտադրությունը, էլեկտրակայանների հզորությունը կաճի ավելի քան 2 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,1—2,2 անգամ։ Յոթնամյակում մեր երկրում ավելի շատ էլեկտրակայաններ են կառուցվելու, քան մինչ այդ եղածները։ Յոթնամյակի վերջին էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը պետք է հասնի 500—520 միլիարդ կիլովատ-ժամի։

Յոթնամյակում արդյունաբերական արտադրանքի աճի միայն մեկ տոկոսը կկազմի ավելի քան 19 միլիարդ ռուբլի։ Պլանների գերակատարման յուրաքանչյուր տոկոսը Հայրենիքին կտա 650 հազար տոննա չուգուն, որից կարելի է պատրաստել մոտ 20

հազար հացահատիկային կոմբայն, 650—700 հազար տոննա գլանվածք, նավթի պլանի գերակատարման մեկ տոկոսը հավասար կլինի 1913 թվականին արտադրված նավթի մեկ քառորդին։

Յոթնամյակի ընթացքում գյուղատնտեսության համախառն արտադրանքը ընդհանուր առմամբ ավելանալու է 1,7 անգամ։ Յոթնամյակի վերջերին գյուղատնտեսական արտադրանքի առանձին տեսակների արտադրությունը հասցվելու է հետևյալ չափերի. հացահատիկինը՝ 10—11 միլիարդ փթի, շաքարի ճակնդեղինը՝ 76—84 միլիոն տոննայի, բամբակինը՝ 5,7—6,1 միլիոն տոննայի, մսինը (սպանդանոցային քաշով)՝ 16 միլիոն տոննայի, կաթինը՝ 100—105 միլիոն տոննայի, կարտոֆիլինը՝ 147 միլիոն տոննայի, բանջարեղեններինը՝ բնակչության պահանջմունքները լրիվ բավարարող չափերի։

Յոթնամյակում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կկազմի մոտ 3 տրիլիոն ռուբլի։ Այդ նշանակում է, որ յոթ տարում կներդրվեն մոտավորապես այնքան միջոցներ, որքան ներդրվել են Սովետական իշխանության բոլոր տարիներին։

Յոթնամյա պլանի կենսագործումով կստեղծվեն բոլոր պայմանները, որպեսզի



ամենամոտ ժամանակներս սովետական ժողովուրդն է՛լ ավելի լավ ապրի, ավելի լրիվ բավարարի իր նյութական ու հոգևոր պահանջմունքները։ Բանվորների ու ծառայողների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով մինչև յոթնամյակի վերջը կավելանան 40 տոկոսով։ Կոլտնտեսականների ռեալ եկամուտները նույնպես կաճեն մոտ 40 տոկոսով։

Սոցիալիստական էկոնոմիկայի հաջողությունների և աշխատանքի արտադրողականության աճման շնորհիվ, մեր երկրում ստեղծված են բոլոր պայմանները մոտակա տարիներին բնակչությունից գանձվող հարկերը վերացնելու համար։ Բանվորական օրը պետք է հասցվի ստորերկրյա աշխատանքում՝ 6 ժամվա, իսկ մնացածների համար՝ 7 ժամվա. երկու հանգստյան օրով։ Պետք է իրականացվի բանվորների և ծառայողների աստիճանաբար փոխադրումը 30—35-ժամյա բանվորական շաբաթվա։ Բանվորական շաբաթը 1957 թվականին եղել է. ԱՄՆ-ում 40 ժամ, Անգլիայում՝ 46, ԳՖՌ-ում՝ 46, Շվեդիայում՝ 46, Ճապոնիայում՝ 50 ժամ։ Այդ նշանակում է, որ յոթնամյակի վերջում ՍՍՌՄ-ում պետք է լինի աշխարհում ամե-

նակարճ բանվորական օրը և աշխատանքային շաբաթը։

Թոշակների մինիմալ չափերը կավելանան 50—70 տոկոսով։ Սովետական հասարակության մեջ նյութական ու կուլտուրական բարիքների զգալի և հարաճուն մասը բաշխվում է ձրի՝ կենսաթոշակների ձևով, սովորողների թոշակների, բազմազավակության նպաստների, դպրոցների, հիվանդանոցների, մանկական և կուլտուրական հիմնարկների կառուցմանը և պահպանմանը հատկացվող միջոցների ձևով։

Յոթնամյա պլանով այդ նպատակների համար ծախսերը 1965 թվականին պետք է հասնեն մոտավորապես 360 միլիարդ ռուբլու, 1958 թվականին եղած 215 միլիարդ ռուբլու դիմաց, և յուրաքանչյուր աշխատողի հաշվով տարեկան կկազմեն մոտ 3.800 ռուբլի։ Բացի դրանից, բնակարանների, դպրոցների, կուլտուր-կենցաղային և բուժհիմնարկների կառուցման վրա կծախսվեն այնքան պետական միջոցներ, որոնք տարեկան մեկ աշխատողի հաշվով կկազմեն ավելի քան 800 ռուբլի։

Յոթնամյակում կառուցվելու է 650—660 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, կամ մոտ 15



միլիոն բնակարան։ Գյուղական վայրերում կառուցվելու է 7 միլիոն տուն։

Սովորողների թիվը տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում յոթնամյակի վերջում հասցվելու է 38—40 միլիոն մարդու, գիշերօթիկ դպրոցներում սովորողների թիվը կհասնի 2 միլիոն 500 հազարի, մանկապարտեզներում ընդգրկված երեխաներինը՝ 4 միլիոն 200 հազարի։

1959—1965 թվականներին բուհերը երկրին կտան 2 միլիոն 300 հազար մասնագետ, նախորդ յոթնամյակում պատրաստված 1 միլիոն 700 հազար մարդու փոխարեն։ Բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների ընդհանուր թիվը 1965 թվականին կկազմի ավելի քան 4,5 միլիոն մարդ, կամ 1958 թվականի համեմատությամբ կաճի 1,5 անգամ։

Յոթնամյակում բուռն զարգացում է ապրելու սովետական գիտությունը, հսկայական միջոցներ են ծախսվելու գիտական նոր հիմնարկների շինարարության, նորագույն սարքավորումների ստեղծման և ձեռք բերման համար։ Գիտական ուժերը լուծելու են տեսական և պրակտիկ մեծ նշանակություն ունեցող խնդիրներ։

***

Մաքսիմենկյան տոնը ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում մեծագույն նվաճումներով է դիմավորում նաև վերածնված հայ ժողովուրդը։

Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի ծնունդն է, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենդանի մարմնավորումը։ Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում կառուցվեցին ժամանակակից տեխնիկայով հագեցված խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, վեր խոյացան նորանոր գործարանների, ֆաբրիկաների, էլեկտրակայանների վիթխարի կորպուսները, ստեղծվեցին արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր, ամբողջ արդյունաբերական կենտրոններ։ Կոլտնտեսային կարգի հաղթանակը գյուղացիության համար ստեղծեց բարեկեցիկ կյանքի բոլոր պայմանները։ Իրագործվեց իսկական կուլտուրական ռեվոլյուցիա, ռեսպուբլիկան ծածկվեց դպրոցների, ակումբների, գրադարանների, կուլտուրայի օջախների, հիվանդանոցների, մանկական հիմնարկների խիտ ցանցով։ Սովետական Հայաստանը մեր մեծ Միության բազմազգ ժողովուրդների եղբայրական ըն-



տանիքի իրավահավասար անդամն է, կոմունիզմի ակտիվ կառուցողը։

1958 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 54 անգամ։ Այժմ մեզ մոտ յուրաքանչյուր շաբաթ ավելի շատ արտադրանք է թողարկվում, քան 1913 թվականին։

Ավելի արագ տեմպերով է զարգանում ծանր ինդուստրիան, որի ճյուղերը բացի պղնձահանքային արդյունաբերությունից, ստեղծվել են Սովետական իշխանության տարիներին։ Սովետական Հայաստանը երկրի ժողովրդական տնտեսությանը տալիս է գունավոր մետաղներ, զանազան հանքանյութեր, շինանյութեր, հաստոցներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, էլեկտրալարեր, ավտոդողեր, քիմիական նյութեր, ժողովրդական սպառման բազմաթիվ ապրանքներ։ Ռեսպուբլիկայի ձեռնարկությունների արտադրանքի տեսակները գերազանցում են 400-ից։

Աննախընթաց վերելքի ուղիով է ընթանում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը, զարգանում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, անընդհատ բարելավվում կոլտնտեսականների նյութական

բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Ժողովրդական կրթության զարգացման, բարձրորակ մասնագիտական կադրերի առկայությամբ, գիտության զարգացմամբ Սովետական Հայաստանը շատ վաղուց առաջ է անցել ոչ միայն իր հարևան, այլև Եվրոպայի զարգացած շատ պետություններից։

Յոթնամյակը նոր, ավելի հոյակապ հեռանկարներ է բացում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց զարգացման համար։

Կոնտրոլ թվերով նախատեսվում է արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումն ավելացնել 2,2 անգամ։ Արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպը կկազմի ավելի քան 12 տոկոս, ընդ որում յոթնամյակում մեկ տոկոսի աճը կազմելու է 68 միլիոն ռուբլի։

Հայաստանը համարվում է գունավոր մետալուրգիայի կարևոր կենտրոններից մեկը, նա երկրին տալիս է պղինձ, ալյումին, մոլիբդենի, կապարի, ցինկի կոնցենտրատներ, հազվագյուտ մետաղների որոշ տեսակներ, ինչպես նաև ոսկի։

Յոթնամյակի ընթացքում գունավոր մետալուրգիայի արտադրանքն ավելանալու է



առնվազն 3 անգամ։ Այդ նպատակով ընդլայնվելու են գործող հանքավայրերն ու ձեռնարկությունները, շահագործման են հանձնվելու մի շարք նոր հանքավայրեր, կառուցվելու են նորագույն տեխնիկայով հագեցված ձեռնարկություններ։

Յոթնամյակում քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելանալու է 3,3 անգամ, կառուցվելու և շահագործման են հանձնվելու ացետատային մետաքսի, կոռունդի, մելամենի, կապրոնի և այլ արհեստական ու սինթետիկ նյութերի արտադրության գործարաններ ու ցեխեր։ Հատկապես մեծ չափերով աճելու է կաուչուկի, կաուստիկ սոդայի, հանքային պարարտանյութերի, ծծմբաթթվի, քացախաթթվի արտադրությունը, ստեղծվելու են քիմիական արտադրանքի մի շարք նոր տեսակներ։

1958 թվականին Հայկական ՍՍՌ-ում, 1913 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել է 500 անգամ, բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայկական ՍՍՌ-ն առաջ է անցել Ֆրանսիայից, Իտալիայից, Ճապոնիայից, Հոլանդիայից։

Արդեն այս տարի շարք են մտնելու Աթար-

բեկյանի, 1960 թվականին՝ Երևանի, իսկ յոթնամյակի վերջում՝ Տաթևի հիդրոկայանները։ Բացի այդ, Ղարադաղից բերվող բնական գազի բազայի վրա կառուցվելու են հզոր ջերմաէլեկտրակայաններ, ինչպես նաև Աղստաֆա-Երևան էլեկտրահաղորդման բարձրավոլտ գիծը՝ եղբայրական Ադրբեջանից էլեկտրաէներգիա ստանալու համար։ Այդ բոլորի հետևանքով 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի սպառումը կաճի 1,8 անգամ։

Յոթնամյա պլանով նախատեսվում են մեքենաշինության և առանձնապես ճշգրիտ մեքենաշինության զարգացման արագ տեմպեր։ Մեքենաշինության բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը կաճի 3,5 անգամ, այդ թվում մետաղահատ հաստոցներինը՝ մոտ 7 անգամ, էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 3 անգամ, ռադիոտեխնիկական և սարքաշինական արդյունաբերությանը՝ 8,7 անգամ, գործիքներինը, ավտոմատացման միջոցներինը և պահեստամասերինը՝ 5,6 անգամ։ Երևանից բացի մեքենաշինության խոշոր կենտրոններ կդառնան Լենինականը, Կիրովականը, Լուսավանը։

Յոթնամյակում գյուղատնտեսական մթ-



թերքների արտադրությունը կաճի 1,7 անգամ։ 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը կավելանա 1,7 անգամ, կաթինը՝ 1,6 անգամ, բրդինը 2 անգամ, խաղողի արտադրությունը՝ 2,8 անգամ, պտուղներինը՝ 2,7 անգամ։

Լուրջ ուշադրություն է դարձվելու բնակարանային շինարարությանը, ինչպես նաև աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերին։



Ամբողջ աշխարհի աշխատավորների համերաշխության օրը՝ Մայիսի 1-ը, սոցիալիզմի երկրների միասնության ու համերաշխության հետագա ամրապնդման, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման նշանակալից հաջողությունների իրադրության մեջ են նշում սոցիալիզմի լագերի բոլոր երկրների աշխատավորները։

Հենվելով տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների, եղբայրական համագործակցության և փոխօգնության հարաբերությունների վրա ժողովրդական դեմոկրատիայի երկրները լուրջ նվաճումներ են ձեռք բերել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում։

Սոցիալիստական ինդուստրացման և գյու-

ղատնտեսության կոոպերացիայի շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի որոշ երկրներ արդեն թևակոխել են սոցիալիզմի կառուցումն ավարտելու ժամանակաշրջանը, իսկ մյուս երկրներում հաջողությամբ առաջ է ընթանում սոցիալիստական հասարակարգի հիմքերի ստեղծումը։ Մոտենում է այն ժամանակը, երբ նրանք, ինչպես և Սովետական Միությունը կկառուցեն կոմունիստական հասարակարգ։

Արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը սոցիալիստական երկրներում վերջին 5 տարում կազմել է 11 տոկոս, մինչդեռ կապիտալիստական աշխարհում այն երեք տոկոսից էլ պակաս է եղել։

1958 թվականին սոցիալիստական երկրներում արդյունաբերական արտադրությունը, 1937 թվականի համեմատությամբ, ավելացել է 5 անգամ։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան 1950—1958 թվականներին արդյունաբերական արտադրությունն ավելացրել է մոտ 10 անգամ։ Լեհաստանում, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, 1958 թվականին արդյունաբերական արտադրանքն աճել է ավելի քան 5,5 անգամ, Չեխոսլովակիայում՝ 3,3 անգամ, ԳԴՌ-ում՝ ավելի քան՝ 2,5 անգամ, Ռումի-



նիայում՝ գրեթե 4 անգամ, Հունգարիայում՝ ավելի քան 4 անգամ, Բուլղարիայում՝ մոտ 9 անգամ, Ալբանիայում՝ 18 անգամ։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հաջողությամբ լուծվում է գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման խնդիրը։ Չինաստանում, Բուլղարիայում, Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկայում իրականացվել է գյուղատնտեսության կոոպերացումը, իսկ Չեխոսլովակիայում և Ալբանիայում այդ պրոցեսն ավարտվում է։

Սոցիալիզմի երկրները հենվելով միմյանց փորձի, համագործակցության և փոխօգնության վրա, արագորեն առաջ են մղում էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացումը։ Սովետական Միության մասնակցությամբ սոցիալիստական երկրներում կառուցվել և կառուցվում են 550 ձեռնարկություն և 169 առանձին ցեխ և հարմարանք, այդ թվում 46 մետալուրգիական կոմբինատ և գործարան, 37 քիմիական, 11 նավթամշակման և 76 մեքենաշինական գործարաններ, 73 էլեկտրակայան։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան հաջողությամբ պայքարում է արդյունաբերության կարևոր ճյուղերի արտադրությամբ

առաջիկա 15 տարում Անգլիային գերազանցելու խնդրի ժամկետից շուտ կատարման համար։ Առաջիկա յոթ տարում գրեթե կկրկնապատկվի Չեխոսլովակիայի, Լեհաստանի արդյունաբերական արտադրանքի ծավալը։

Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ համաշխարհային սոցիալիստական սիստեմը, ամբողջությամբ վերցրած, արդեն հասել է համաշխարհային կապիտալիստական սիստեմին։ Սոցիալիստական երկրներին բաժին է ընկնում համաշխարհային արդյունաբերական արտադրության մեկ երրորդից ավելին, հացահատիկի համաշխարհային արտադրության գրեթե կեսը և բամբակի՝ 43 տոկոսը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի կատարման ու գերակատարման, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան կեսը։ Դրանով իսկ կապահովվի կապիտալիզմի համաշխարհային սիստեմի նկատմամբ սոցիալիզմի համաշխարհային սիստե-



մի գերազանցությունը նյութական արտադրության մեջ։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետագա աճի և ամրապնդման հետ մեկտեղ հաջողությամբ կզարգանան նաև բոլոր սոցիալիստական երկրները, կհավասարվի նրանց տնտեսական և կուլտուրական զարգացման ընդհանուր գիծը, ավելի արագ տեմպերով նախադրյալներ կստեղծվեն կոմունիզմի առաջին փուլից նրա երկրորդ փուլին անցնելու համար։

Կոմունիստական շինարարության հաջողությունները ՍՍՌՄ-ում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացումը և ծաղկումը կհեշտացնեն կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների պայքարը իրենց կենսական շահերի համար, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։

Սովետական ժողովուրդը պատվով է կատարում իր ինտերնացիոնալ պարտքը բոլոր երկրների աշխատավորների առաջ, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման առաջ, որը գնալով աճում և ամրապնդվում է։

Ինչքան էլ իմպերիալիստները փորձեն խեղդել կոմունիստական շարժումը, ինչքան

էլ նրանց լակեյները՝ ռեվիզիոնիստները, փորձեն ջլատել այն, նրանց երբեք այդ չի հաջողվի։

Այժմ կոմունիստական ու բանվորական պարտիաներ կան 83 երկրներում, և իրենց շարքերում ունեն ավելի քան 33 միլիոն մարդ։ Այդ հզոր ուժի ետևից գնում են հարյուր միլիոնավոր աշխատավորներ, որոնք համոզված են, որ միայն կոմունիստներն են ընդունակ նրանց բերելու ազատություն և երջանիկ կյանք։

ԱՄՆ-ում վերջերս լույս է տեսել «Կապիտալիստական մանիֆեստ» գիրքը, որի հեղինակները բացահայտորեն ազդարարում են իրենց մտադրությունը հերքելու «Կոմունիստական մանիֆեստ»-ը։ Ավելի քան հարյուր տարի է անցել գիտական կոմունիզմի հանճարեղ երկի լույսընծայումից և ահա փողի քսակի երկրպագու գրչակները «հերքում են» նրա հիմնական դրույթներն ու եզրակացությունները։ Բանն այն է, որ կյանքը օրեցօր ավելի ու ավելի է հաստատում «Կոմունիստական մանիֆեստ»-ի գաղափարների կենսական ուժը։ Ներկայումս արդեն ոչ թե կոմունիզմի ուրվականը, այլ ամբողջ մարդկության մեկ երրորդը Սովետական Միության գլխավորությամբ ընթանում է Մարքսի և Էնգելսի հանճարով գծված կոմունիզմի ուղիով, մյուս կողմից էլ կյանքը հաստատում է «Կոմունիստական մանիֆեստ»-ի դրույթների ճշտությունը կապիտալիստական սիստեմի անխուսափելի կործանման մասին։



1957 թվականի նոյեմբերին կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցությունը ամբողջ ուժով ցուցադրեց եղբայրական պարտիաների հայացքների լիակատար միասնությունը։ Խորհրդակցության Դեկլարացիան ստացավ բոլոր կոմունիստական ու բանվորական պարտիաների միահամուռ հավանությունը և դարձավ համաշխարհային կոմունիստական շարժման մարտական ծրագիր։ Դրանից հետո կոմունիստական պարտիաների շարքերում և ամբողջ միջազգային կոմունիստական շարժման մեջ է՛լ ավելի ամրապնդվեց համախմբվածությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարական հիմքի վրա։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը մեկ անգամ ևս ցուցադրեց համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման կուռ միասնությունը։ Համագումարի աշխատանքներին մասնակցում էին աշխարհի 72 երկր-

ների մարքս-լենինյան պարտիաների պատվիրակություններ, դա միջազգային կոմունիստական շարժման պատմության ընթացքում նրա ամենալայն ներկայացուցչությունն էր։ Համագումարի ամբիոնից եղբայրական 50 պարտիաների պատվիրակությունների ղեկավարների ելույթներում, ողջույններում և ստացված բազմաթիվ ուղերձներում ընդգծվում էր մեր պլանների վիթխարիությունը, արտացոլվում էին սոցիալիզմի համաշխարհային պատմական նվաճումները և նրա առավելությունները։

Մարքս-լենինյան բոլոր պարտիաները միահամուռ կերպով դատապարտեցին Հարավսլավիայի Կոմունիստների միության ռևիզիոնիստական ծրագիրը։ Հարավսլավական ղեկավարության տեսությունը և պրակտիկան նշանակում են նահանջ բանվոր դասակարգի դիրքերից, միջազգային պրոլետարիատի համերաշխության սկզբունքներից։ Հարավսլավիայի Կոմունիստների միության ղեկավարների հայացքներն ու քաղաքականությունը հարվածի տակ են դնում Հարավսլավիայում ժողովրդական ռևոլյուցիայի և սոցիալիզմի նվաճումները։

Սովետական Միության կոմունիստները, սովետական ժողովուրդը բարեկամական



զգացումներ է տածում դեպի Հարավսլավիայի եղբայրական ժողովուրդները, դեպի հարավսլավական կոմունիստները։ Մենք Հարավսլավիայի հետ ցանկանում ենք համագործակցել իմպերիալիզմի դեմ, խաղաղության համար մղվող պայքարի բոլոր այն հարցերում, որոնցում մեր դիրքերը կհամընկնեն։

Մեր աչքերի առջև տեղի է ունենում իմպերիալիզմի անարգ գաղութային տիրապետության փլուզումը։ Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի օրինակով ինքնուրույն զարգացման ուղին են թևակոխել Աֆրիկայի և Ասիայի մի շարք երկրներ։ Ազգային-ազատագրական հզոր շարժումը խարխլում է գաղութակալության հիմքերը Ալժիրում, Կոնգոյում, Կամերունում, Լատինական Ամերիկայում։ Սովետական Միությունը ողջունեց արաբ ժողովուրդների և Ասիայի, Աֆրիկայի՝ գաղութային ճնշումից ազատագրված մյուս ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։ Ամբողջ առաջադեմ մարդկությունը ողջունեց Եգիպտոսի ազգային ազատագրությունը, Իրաքում ռեակցիոն ռեժիմի տապալումը և անկախ ռեսպուբլիկայի հռչակումը։

Մայիսի 1-ի օրը մենք հպարտորեն տես-

նում ենք, թե ինչպես ձեռք ձեռքի տված միասնական հզոր և միաձույլ սոցիալիստական լագերում համախմբված է երկրագնդի բնակչության մեկ երրորդից ավելին, մոտ 1 միլիարդ մարդ։

Մայիսմեկյան տոնը ամբողջ աշխարհի աշխատավորները դիմավորում են խաղաղության դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի հետագա ամրապնդման և ընդլայնման իրադրության մեջ։ Այժմ ամբողջ մարդկության համար չկա ավելի վեհ և կենսական հարց, ինչպիսին խաղաղության համար մղվող պայքարն է։

Սովետական ժողովուրդը գտնվելով խաղաղության համար ժողովուրդների մղած տիտանական պայքարի ավանգարդում, մայիսմեկյան օրերին իր միահամուռ կամքն արտահայտում է «բարեկամություն և խաղաղություն»— լոզունգով։ Պայքարելով խաղաղության համար, սովետական մարդիկ զգուշացնում են բոլոր նրանց, ովքեր խաղում են կրակի հետ, ովքեր խաղաղասեր ժողովուրդներին փորձում են ահաբեկել ատոմային ու ջրածնային ռումբերով։

Սովետական ժողովուրդը առանց ձեռքերը ծալելու աշխատում է մեր բոլորիս երջանկության, մարդկության լավագույն ապագա-



յի համար և նա ոչ ոքի թույլ չի տա խախտելու իր խաղաղ ստեղծարար աշխատանքը։ Խաղաղասիրական քաղաքականությունը բխում է սովետական սոցիալիստական կարգի բուն էությունից։

ՍՄԿԿ XXI համագումարը առաջիկա յոթնամյակում պարտիայի գլխավոր խնդիրը միջազգային հարաբերությունների բնագավառում համարում է հետևողականորեն խաղաղության և ժողովուրդների անվտանգության պահպանման ու ամրապնդման արտաքին քաղաքականություն վարելը, սոցիալիստական տարբեր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի հիման վրա, իրագործել «սառը պատերազմը» դադարեցնելու և միջազգային լարվածությունը մեղմացնելու կուրս։

Խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովման համար առանձնապես կարևոր նշանակություն ունի Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության ստեղծումը։ Երկու համաշխարհային պատերազմներն սկսվել են Եվրոպայում և սանձազերծվել են գերմանական միլիտարիզմի կողմից։ Բայց այստեղ դեռևս վերացված չեն երկրորդ համաշխարհային պատերազմի հետքերը, նույնիսկ ստորագրված չէ Գերմանիայի հետ

հաշտության պայմանագիրը, իսկ Արևմտյան Գերմանիայում մինչև հիմա պահպանվում է օկուպացիոն ռեժիմը։ Դեռ ավելին, այստեղ վերածնվում է գերմանական միլիտարիզմը և ռևանշիզմը , հասունանում է նոր պատերազմի վտանգը։ ՍՍՌՄ-ը բազմիցս առաջարկել է ապահովել Եվրոպական անվտանգությունը, բայց արևմտյան տերությունները լռությամբ են մատնում այդ առաջարկները։ Նրանք օգնում են գերմանական միլիտարիզմի վերածնմանը, նրան զինում են միջուկային զենքով, մի բան, որը կարող է մարդկությանը երրորդ անգամ ներքաշել համաշխարհային պատերազմի հորձանուտը։

Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության ապահովման ուղիներն են՝ ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրերի վերացումը, կամ նրանց միջև չհարձակման պակտի կնքումը, Եվրոպայի կենտրոնում ատոմազերծ գոտի ստեղծելը (ներառյալ ԳՖՌ, ԳԴՌ, Լեհաստանը, Չեխոսլովակիան), այդ զոնայում զինված ուժերի կրճատումը մոտ մեկ երրորդով, օտարերկրյա զորքերի դուրս բերումը Եվրոպայից և նրանց զգալի կրճատումը։

Եվրոպական կոլեկտիվ անվտանգության համար ամենակարևորը Գերմանիայի հետ



հաշտության պայմանագրի կնքումն է և Բեռլինի հարցի լուծումը։ Այդ բանը կարևոր դեր կխաղար Եվրոպայում ստեղծված դրության նորմալացման, ընդհանուր խաղաղության ամրապնդման գործում։

ԱՄՆ-ի վարած ագրեսիվ քաղաքականությունը Հեռավոր Արևելքում, Չինաստանում և խաղաղասեր մյուս պետությունների նկատմամբ լարվածության հիմնական աղբյուրն է։ Միայն ՉԺՌ-ի և խաղաղասեր մյուս ուժերի վճռական գործողությունները կանխեցին պատերազմական հրդեհը Հեռավոր Արևելքում։ Սովետական Միությունը գտնում է, որ անհրաժեշտ է Հեռավոր Արևելքում և Խաղաղ օվկիանոսի ամբողջ ավազանում ստեղծել խաղաղության գոտի և առաջին հերթին՝ ատոմային զենքից զերծ գոտի։

Սովետական Միությունը պահանջում է լիովին արգելել ատոմային, ջրածնային և հրթիռային զենքը, կրճատել սպառազինությունը և զինված ուժերը, միջազգային խստիվ վերահսկողությամբ սահմանել այդ միջոցառումների կենսագործման նկատմամբ։ Այդ բանը կնպաստեր վստահության աճմանը և ուղի կհարթեր սպառազինությունների հետագա կրճատման, միջազգա-

յին մյուս պրոբլեմների լուծման համար։ Մինչդեռ սպառազինությունների մրցավազքը ծանր բեռ է աշխատավորների ուսերին, որը ժողովրդին ոչինչ չի բերում բացի զրկանքներից, անվստահությունից վաղվա օրվա նկատմամբ, նորանոր ֆինանսական և նյութական ռեսուրսներ կլանելուց։

Բոլոր երկրների ժողովուրդները պահանջում են՝ դադարեցնել ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները, վերջ տալ սպառազինությունների մրցավազքին։

Վերջին 3 տարիներին ռազմական հատկացումները ԱՄՆ-ում ավելացել են 5,5 միլիարդ դոլարով, որը գնացել է հրթիռների և ատոմային զենքի արտադրության վրա։ Դրա հետևանքով ծանրացել է հարկային բեռը, ուժեղացել աշխատավորների պայքարն իրենց տնտեսական, քաղաքական իրավունքների պաշտպանման համար։ ԱՄՆ-ի նոր բյուջեի նախագիծը նախատեսում է, որ 1960 թվականին անհատական եկամտահարկը պետք է հասնի 41 միլիարդ դոլարի, որը 41 տոկոսով ավելի բարձր է, քան 1952 թվականին։

ԱՄՆ-ում միայն 1958 թվականի առաջին կեսին գործազուրկ է արել 720 հազար մարդ,



Ֆրանսիայում՝ 1 միլիոն 27 հազար մարդ, Անգլիայում՝ 1958 թվականի 9 ամիսներին՝ 424 հազար մարդ, Ճապոնիայում՝ 590 հազար մարդ, ԳՖՌ-ում 1958 թվականի վերջին կար մոտ 1 միլիոն գործազուրկ։

«Ժողովրդական կապիտալիզմի» ոչ մի քող չի կարող ծածկել գործազուրկների վիթխարի բանակը ԱՄՆ-ում։ Միչիգանի համալսարանի պրոֆեսորներ Ռ. Խեյբերի և Ռ. Կոհենի ուսումնասիրությունների համաձայն 1957 և 1958 թվականների կեսերին ԱՄՆ-ում յուրաքանչյուր 4 ընտանիքից մեկը տուժել է գործազրկությունից։ Աշխատանք չեն ունեցել 8,5 միլիոն մարդ, բացի այդ 4 միլիոն մարդ ոչ լրիվ աշխատանքային շաբաթ է ունեցել։ Ամերիկյան պաշտոնական տվյալների համաձայն ԱՄՆ-ում կա 5 միլիոն 800 հազար գործազուրկ։ Ամերիկյան «Խարպերս մեգեզին» ժուռնալը տվյալներ է բերում այն մասին, որ ԱՄՆ-ի 12 երեխաներից մեկը իր կյանքի մի մասն անց է կացնում հոգեբուժական հիվանդանոցներում, իսկ բժշկելն այնքան թանկ է, որ նրանից կարող է օգտվել երկրի բնակչության միայն 10 տոկոսը։

Կապիտալիզմի երկրներում անընդհատ աճում է աշխատավորների հարկային բեռը,

բարձրանում են ապրանքների գները, կոմունալ ծախսերը, ընկնում է ռեալ աշխատավարձը։

ԱՄՆ-ում նույնիսկ իջեցված պաշտոնական տվյալներով կենսարժեքը անցյալ տարվա հոկտեմբերին 23,7 տոկոսով ավելի բարձր է եղել քան 1947—49 թվականներին։ Չիլիում 1958 թվականի առաջին տասն ամիսների ընթացքում կենսարժեքն աճել է 27,3 տոկոսով, ԳՖՌ-ում 1958 թվականի նոյեմբերին սննդամթերքների մանրածախ գները 19 տոկոսով բարձր են եղել 1950 թվականի գներից։ ԱՄՆ-ում 1950—1957 թվականներին քայքայվել է 792 հազար ֆերմերային տնտեսություն։ Գյուղացիական տնտեսությունների քայքայման պրոցեսը շարունակվում է ԳՖՌ-ում, Իտալիայում, Ֆրանսիայում, Թուրքիայում և մյուս երկրներում։

Մայիսմեկյան կարմիր դրոշակները բարձր կպահեն կապիտալիստական երկրների աշխատավորները։ Դուրս գալով ցույցի, հավաքվելով միտինգի, նրանք ցույց կտան իրենց պատրաստակամությունը և վճռականությունը նոր ուժով պայքարելու իմպերիալիստական ստրկության դեմ, սոցիալիզմի և



դեմոկրատիայի գործի հաղթանակի համար, մարդկությանը նոր պատերազմի վտանգից փրկելու համար։

Պատերազմի սպառնալիքի դեմ մղվող պայքարում գնալով ամրապնդվում և ընդլայնվում է խաղաղության կողմնակիցների շարժումը։

Խաղաղության կողմնակիցները հանդես են գալիս որպես պետությունների միջև վստահության մթնոլորտ ստեղծելու ջատագովներ ամբողջ աշխարհում, նրանք պահանջում են կազմակերպել բարձր մակարդակով պետությունների ղեկավարների հանդիպում՝ վիճելի հարցերը կարգավորելու համար։ Նրանք ակտիվորեն պաշտպանում են խաղաղության ամրապնդման և ժողովուրդների միջև նորմալ, բարեկամական հարաբերություններ հաստատելու վերաբերյալ Սովետական Միության և մյուս խաղասեր պետությունների առաջարկները։

Այժմ արտահայտելով ամբողջ մարդկության կամքը, խաղաղության կողմնակիցները հաստատակամորեն պահանջում են անհապաղ վերացնել միջուկային փորձարկումները, որպես մասսայական ոչնչացման զենքի լիակատար արգելման առաջին քայլ։ Նրանք պահանջում են, որպեսզի իմպերիա-

լիստները հրաժարվեն «սառը պատերազմի», «ուժի դիրքերից» ելնող քաղաքականությունից, վերջ տան ատոմային պատերազմի սպառնալիքին։

Ատոմային պատերազմի կանխման համար ժողովուրդների շարժումն է՛լ ավելի մասսայական բնույթ է ստացել վերջին շրջանում։ Անգլիայում և Ճապոնիայում վերջերս կազմակերպվել է ատոմային վտանգի դեմ ուղղված վիթխարի շարժում։ 1959 թվականի հունվարին Լոնդոնում կայացավ Եվրոպական կոնգրես միջուկային զինաթափման համար։ ԱՄՆ-ում ստեղծված է «խելացի ատոմային քաղաքականության համար» կոմիտե, «բնակարաններ՝ ատոմային ռումբերի փոխարեն, հաց սովածներին՝ ռազմական բյուջեների փոխարեն»— այս է խաղաղության կողմնակիցների լոզունգը շատ երկրներում։ Այս փաստերը խոսում են այն մասին, որ խաղաղության ուժերը գնալով աճում և ամրապնդվում են։

***

Գարնանային այս պայծառ օրերին մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր անկյուններում, գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, ամենուրեք աղբյուրի նման հորդում է աշխա-



տավորների ստեղծագործական նախաձեռնությունը, ծավալվում է նախամայիսյան սոցիալիստական մրցությունը յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարման և գերակատարման համար։ Աշխատավորների յուրաքանչյուր կոլեկտիվ, յուրաքանչյուր ձեռնարկություն, արտադրական տեղամաս ձգտում է իր արժանավոր ներդրումն ունենալ այդ պատվավոր գործում և աշխատանքային նոր հաջողություններով նշանավորել Մայիսի մեկը՝ աշխատավորների միջազգային համերաշխության օրը։

Մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ դրոշով, Կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ առա՜ջ դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները։

Կեցցե՜ Մայիսի մեկը՝ աշխատավորների միջազգային համերաշխության, բոլոր երկրների բանվորների եղբայրության օրը ։

Կեցցե՜ կոմունիզմը ամբողջ մարդկության պայծառ ապագան։

# ՆՊԱՏԱԿԱՍԼԱՑ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՄԱՐ

Մ. ԽՈՆԴԿԱՐՅԱՆ

*Վերջերս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն որոշում ընդունեց «Ստալինյան մարզի աշխատավորության մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին»։ Այդ որոշումը նոր և պատասխանատու խնդիրներ է դնում պարտիական կազմակերպությունների, մեր բոլոր ագիտատորների առջև։ Օգտագործելով ագիտացիոն-մասսայական աշխատանքի բազմապիսի ձևերն ու մեթոդները, ագիտատորները աշխատավորությանը պետք է հանգամանորեն պարզաբանեն ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները, մոբիլիզացնեն նրանց ուժերը յոթնամյա պլանը հաջողությամբ իրագործելու համար։*

*Սպանդարյան շրջանի պարտիական կազմակերպությունները բնակչության մեջ և*



*հիմնարկ-ձեռնարկություններում ագիտացիոն-մասսայական աշխատանք կատարելու համար առանձնացրել են շուրջ 1.800 ագիտատոր։ Շրջանի շատ պարտիական կազմակերպությունների ագիտկոլեկտիվներ մտածված ու նպատակասլաց քաղաքական-մասսայական աշխատանք են տանում աշխատավորության մեջ ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը մասսայականացնելու ուղղությամբ։*

*Ագիտացիոն աշխատանքներում ընդգրկված են պարտիական-սովետական աշխատողներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավար աշխատողներ, արտադրության առաջավորներ, որոնք ունեն քաղաքական-մասսայական աշխատանքի հարուստ փորձ։ Կարի № 1 Ֆաբրիկայում շաբաթական մեկից-երկու անգամ ագիտատորներն ըստ ագրեգատների զրույցներ են անցկացնում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի որոշումների, Սովետական Միության ներքին և արտաքին քաղաքականության, ինչպես նաև տեխնիկայի և գիտության նվաճումների, Ֆաբրիկայի ներքին կյանքին վերաբերող և շատ այլ հարցերի շուրջ։ Բանվորների շրջանում ագիտացիոն-զրույցներ են անցկացնում*

ֆաբրիկայի դիրեկտոր՝ Գ. Մանուկյանը, պարտբյուրոյի քարտուղար Լ. Սայադյանը, ֆաբկոմի նախագահ՝ Ար. Զարգարյանը, կոմերիտական կազմակերպության քարտուղար՝ Է. Նալբանդյանը, ցեխի պետեր՝ Ե. Աթաջանյանը, Ս. Գալստյանը և ուրիշներ։ Ֆաբրիկայում բոլորը գիտեն դիրեկտորի տեղակալ, բազմամյա ագիտատոր Հ. Հովսեփյանին, որի հետաքրքիր և մատչելի զրույցները մեծ բավականությամբ են լսում ունկնդիրները։ Ֆաբրիկայի ագիտկոլեկտիվը կրկնապատկել է իր ջանքերը պարտիայի XXI համագումարի նյութերը բոլոր աշխատողների սեփականությունը դարձնելու, աշխատանքային նոր խանդավառություն առաջացնելու համար։

Նույն ֆաբրիկայում ներքին ռադիոհանգույցի միջոցով ամեն օր հաղորդում է տրըվում պլանների կատարման, աշխատանքի արտադրողականության և որակի բարձրացման, նյութերի խնայողության գործում լավագույն ցուցանիշների հասած ագրեգատների և առանձին բանվոր-բանվորուհիների կատարած աշխատանքի փորձի մասին։

Ագիտացիոն աշխատանքի ուսանելի փորձ ունեն Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարանի ագիտատորները։ Նրանք մշտական գործող



սեմինարի միջոցով տեսական և մեթոդական անհրաժեշտ օգնություն են ստանում։ Պարտբյուրոն իր նիստերում սիստեմատիկաբար լսում է ագիտացիոն աշխատանքին վերաբերող հարցեր, կազմակերպում է լավագույն ագիտատորների փորձի փոխանակում։ Ցեխերում ամեն օր բազմակողմանիորեն պարզաբանվում և մասսայականացվում են օրվա նորությունները, առաջ են քաշվում կոլեկտիվի կյանքին վերաբերող շատ հարցեր։ Ագիտատորներ Ա. Գուլիջանյանը, Հ. Սարուխանյանը, Վ. Մանուկյանը իրենց զրույցների ժամանակ մեծ տեղ են տալիս աշխատանքային կարգապահության ամրապընդման, տեխնոլոգիայի պահպանման, որակի բարելավման, պլանի կատարման, առաջավոր փորձի արմատավորման և այլ հարցերին։ Աշխատողների քաղաքական դաստիարակությանը խոշոր չափով նպաստում են նաև քաղաքական և գիտական թեմաներով պարբերաբար կազմակերպվող դասախոսությունները և զեկուցումները։

Ցուցադրական ագիտացիան խոշոր դեր է խաղում պարտիայի և կառավարության որոշումները և ձեռնարկությունների առջև դրված կոնկրետ խնդիրները մատչելի ձևով աշխատավորությանը պարզաբանելու գոր-

ծում։ Աշքի ընկնող տեղերում փակցված ճաշակով ձևավորված լոզունգները, կոչերը, դիագրամաները, աղյուսակները, սոցմրցության պայմանագրերի կետերը, որոնք արտացոլում են տվյալ ժամանակի կարևորագույն խնդիրները, հեշտությամբ են ընկալվում աշխատավորների կողմից և ոգևորում նրանց։

Այս տեսակետից գովելի նախաձեռնություն է ցուցաբերել Երևանի Գինու կոմբինատի պարտկազմակերպության բյուրոն։ Կոմբինատի աչքի ընկնող տեղերում փակցված են գեղեցիկ ու խնամքով պատրաստված դիագրամաներ, աղյուսակներ, կոչեր և դիտողական ագիտացիայի այլ միջոցներ, որոնք արտացոլում են Գինու կոմբինատի առջև դրված խնդիրները, օրինակ, յոթնամյակը կատարենք ժամկետից շուտ, եթե 1959 թվականին վագոնների բեռնվածությունը հասցնենք 500 դեկալիտրի, կտնտեսենք մեկ միլիոն ռուբլի, կամ խնայեցեք արկղները, յուրաքանչյուր արկղի արժեքն է 12 ռուբլի և այլն։

Ընտրություններից հետո մի շարք պարտկազմակերպություններ չթուլացող թեմպերով շարունակում են ագիտացիոն աշխատանք կատարել բնակչության մեջ ըստ



բնակավայրի, թաղամասերում և բնակելի շենքերում։ Օրինակ, Առողջապահության մինիստրության պարտիական կազմակերպությունը մինիստրության պատասխանատու աշխատողներից կազմված ագիտկոլեկտիվի միջոցով ընտրություններից հետո շարունակում է թաղամասերում սիստեմատիկաբար զրույցներ կազմակերպել բնակչության համար։ Ագիտատորները բնակիչների հետ զրույցներ են ունեցել յոթնամյա պլանի, ՍՄԿՊ XXI համագումարի, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման, հասարակական սննդի հետագա զարգացման և բարելավման մասին ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման և շատ ուրիշ հարցերի վերաբերյալ։ Ագիտատորներ՝ Գ. Խանդամյանը և Ն. Սաղումյանը արդեն մի քանի տարի է, ինչ ամրացված են Պ. Աղամյանի փողոցի № 5—10 տներին։ Նրանք բարեխղճորեն պատրաստվելով ամեն մի զրույցի, բնակիչներին հանգամանորեն պատմում են սովետական ժողովրդի ձեռք բերած մեծ հաջողությունների և առաջիկա յոթնամյակում կատարվող վիթխարի աշխատանքների մասին։ Ունկնդիրների և ագիտատորների միջև ստեղծված է սերտ կապ։ Այդ բացատրվում է նաև նրա-

նով, որ նրանք բնակիչներին հուզող հարցերին ժամանակին և ճիշտ պատասխան են տալիս։ Մինիստրության պարտբյուրոն իր նիստերում և ժողովներում պարբերաբար քննարկում է բնակչության շրջանում տարվող ագիտացիոն աշխատանքին վերաբերող հարցեր, ինչպես նաև ագիտատորների համար սիստեմատիկաբար կազմակերպվող սեմինար պարապմունքների և լավագույն ագիտատորների փորձի փոխանակման միջոցով մեթոդական ու տեսական օգնություն է ցույց տալիս մյուս ագիտատորներին։

Բնակչության շրջանում սիստեմատիկաբար ագիտացիոն-բացատրական աշխատանք է կատարում նաև Ռուսթավելու անվան դպրոցի ագիտկոլեկտիվը։ Բացի տներում տարվող ագիտացիոն զրույցներից, դպրոցի շենքում թաղամասի բնակիչների համար պարբերաբար կազմակերպվում են դասախոսություններ, զեկուցումներ ոչ միայն քաղաքական, այլ նաև գիտահանրամատչելի և աթեիստական թեմաներով։

Բնակչության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը մշտական և սիստեմատիկ դարձնելու նպատակով Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների վերջին ընտրություններից հե-



տո շրջանում ստեղծվել է մշտական գործող 10 ագիտկետ։ Այդ ագիտկետներից լավ է գործում Ռեսպուբլիկական նախագծային ինստիտուտի մշտական գործող ագիտկետը, որտեղ ունկնդիրների համար բացի զրույցներից ու դասախոսություններից, պարբերաբար կազմակերպում են էքսկուրսիաներ, կինոնկարների կոլեկտիվ դիտումներ և այլ հետաքրքիր միջոցառումներ, որոնք սերտ կապ են ստեղծում ագիտկետի և բնակիչների միջև։ Բնակիչները մեծ հետաքրքրությամբ մասնակցեցին այն երեկոյին, որտեղ ՍՄԿԿ XXI համագումարի մասին տպավորություններով հանդես եկավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Հ. Բաղդասարյանը։

Վերջերս ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի պլենումը քննարկելով բնակչության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի բարելավման միջոցառումների մասին հարցը, բոլոր պարտկազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ ՍՄԿԿ XXI համագումարի պատմական որոշումները դարձնել յուրաքանչյուր քաղաքացու սեփականությունը, է՛լ ավելի բարձրացնել ագիտացիոն աշխատանքների գաղափարական մակարդակը։

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ



---

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 9 1959 г.

ՎՖ 03364 Պատվեր 265 Տիրաժ 9.200

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.